Բարխուդարյան, Ս. Գ. (1969) *Դերբենդի հայ-աղվանական թագավորություն.*
Պատմա-բանասիրական հանդես, № 3 . pp. 125-148.

# ԴԵՐԲԵՆԴԻ ՀԱՅ-ԱՂՎԱՆԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Ս. Գ. ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ

Հայկական աղբյուրներից պատմագիր-ժամանակագիր Մ. Ուռհայեցին Աղվանքի հյուսիս-արևելքում, «ի Դարբանդ աշխարհին» հիշատակում է մի հայ թագավորություն, Դերբենդ մայրաքաղաքով, որը պատմագիտական գրականության մեջ ոչ միայն պատշաճ ուշադրության չի արժանացել, այլև ժամանակագրի հաղորդումը անտեղի կասկածի տակ է առնվել։ Մ. Ուռհայեցին իր աշխատության մեջ երկու անգամ է անդրադարձել այդ խնդրին. առաջին անգամ 961 (ՆԺ) թվականի տակ Աշոտ Գ Բագրատունի թագավորի կողմից Անին մայրաքաղաք հռչակելու հանդիսությունների ժամանակ.

«Հարկաւորեալ կոչեցին զամենագովելին զՏէր Յովհաննէս կաթուղիկոսն Աղուանից աշխարհին, եւ քառասուն եպիսկոպոսունք ընդ նմա. եւ մեծաշուք իշխանութեամբ կոչեցին զՓիլիպպոս զթագաւորն Աղուանից՝ զայր աստուածային եւ զսուրբ, զորդին Գողազգակայ (տարբերակներ՝ Գոշազգակայ, Գոշակտակայ), որդոյ Վաչագանայ, որք էին թագաւորք Աղուանից աշխարհաց»[1]։

Երկրորդ անգամ 1085 թվականի տակ, երբ նկարագրում է հայ եկեղեցու ներսում եղած տարաձայնությունները և մի քանի հակաթոռ կաթողիկոսների առկայությունը, և որ այդ գժտությունը «ոչ կարաց մտանել յաշխարհն Աղուանից, որ ասի՝ խորին աշխարհ Հայոց»[2]. և այդ առթիվ էլ ավելի մանրամասն թվում է Դերբենդի հայ թագավորների հաջորդականությունը.

«էին և այլ թագաւորք Հայոց ի Դարբանդ աշխարհին, որ ասի Կապանք, սահմանակից Օղաց եւ Աղուանից, որք էին թագաւորք անարատք և սրբակրօնք, որք յիշատակին ի սուրբ պատարագն ընդ այլ աստուածասէր սուրբ թագաւորքն, որք էին անուանք այսոքիկ՝ Վաչագան, և Գոշակտակն նորին որդին, Փիլիպէ որդի Գոշակտակին, Սեւադա որդին Փիլիպէի, Սենեքարիմ որդի Սեւադայի, Գրիգոր որդի Սենեքարիմայ, որ դեռ ևս կենդանի էր մինչև գրէաք զայս մատենագրութիւնս մեր»[3]։

Այսպես, ուրեմն, իրար հաջորդած վեց թագավորներ, որոնցից վերջինը՝ Գրիգորը, դեռ կենդանի է եղել ժամանակագրի օրոք, այսինքն մինչև աշխատության ավարտը, 1136 թ.։

Այս թագավորների տոհմական գերեզմանատունը գտնվելիս է եղել Դերբենդից հարավ, այժմյան Խաչմազ գյուղի հանգստարանում, ինչպես կտեսնենք հետո. այժմ ասենք, որ տեղագիր ճամփորդները այստեղ արտագրել և հրատարակել են հետևյալ թագավորների տապանագրերը.

---

[1] Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 3—4։

[2] Նույն տեղում, էջ 230։

[3] Նույն տեղում, էջ 231։

1. Այս է տապան Սենեքերիմ արքայի[4]
2. Գրիգոր Կրեյսար[5]
3. Յովհաննէս Կրեյսար[6]

Այս ցանկի առաջին երկու անունները նույնն են Ուռհայեցու շարքի վերջին անունների հետ. նոր է Յովհաննէսը, որն անշուշտ Գրիգորի հաջորդն է, որով և Դերբենդի թագավորների շարքը բաղկանում է յոթ անուններից։

Արդ, ինչպե՞ս է եղել, որ այսպիսի ակնհայտ մատենագրական և արձանագրական ստույգ տեղեկությունների առկայության պայմաններում մեր պատմաբանները մինչև օրս չեն անդրադարձել այս խնդրին։

Ամենից առաջ կարծում ենք, որ հայ պատմագրության և բանասիրության չափից ավելի զգուշավորությանը պիտի վերագրել այդ լռությունը, որին առիթ են տվել հետևյալ պատճառները.

1. Դարբանդ և Հաբանդ կամ Աբանդ տեղանունների հնչյունական մոտիկությունը, որը և առիթ է տվել Սյունիքի ու Բաղաց-Կապանի թագավորության նույնացմանը։

2. Դերբենդի թագավորների Ուռհայեցու ցանկի վեց անուններից երկուսի, այն է՝ Սենեքերիմի և Գրիգորի նույնությունը Սյունյաց կամ Կապանի թագավորների ցանկի վերջին անունների հետ։

Քննենք այդ երկու պատճառները։ Երբ իր եռահատոր պատմությունն էր գրում մեր նոր ժամանակների պատմագիտության ռահվիրա Չամչյանցը, իր ձեռքի տակ չուներ ոչ միայն պատմա-տեղագրական նկարագրություններ, այլև տպագրված հայ մատենագրություն, այդ պատճառով էլ միայն Մ. Ուռհայեցու մոտ հիշատակված Դերբենդի թագավորության, Հայաստանից հեռու այդ միջավայրի մասին եղած վերոհիշյալ հատվածներին նա վերաբերվեց կասկածանքով և իր կարծիքը հայտնեց հետևյալ բառերով. «Բայց այդ հայտնի վրիպակ է՝ շփոթեալ զԴարբանդ ընդ բառիս Աբանդ և կամ գուցէ այլ ոք անտեղեակ մուծեալ իցէ զայդ մեկնութիւն ի գիրս Ուռհայեցւոյ»[7]։

Չամչյանցի հեղինակության ազդեցությամբ Ուռհայեցու ժամանակագրության առաջին՝ երուսաղեմյան հրատարակիչները այդ հատվածը ծանոթագրեցին Չամչյանցի ոգով և այնուհետև հետագա պատմաբաններն էլ ենթարկվեցին այդ կարծիքին։ Բոլոր դեպքերում Չամչյանցն իր ձեռքի տակ պիտի ունենար Ուռհայեցու շատ քիչ թվով ձեռագրեր, իսկ այն, ինչ որ այժմ մենք օգտագործում ենք՝ երկրորդ՝ Վաղարշապատի հրատարակությունը, կատարված է վեց ձեռագրի և երուսաղեմյան տպագրի համեմատությամբ և տարբերակների նշումներով. այդ բոլորի մեջ էլ մեզ հետաքրքրող հատվածը և գոյություն ունի, և բոլոր դեպքերում էլ գրված է Դարբանդ աշխարհ։ Ուռհայեցու հատվածի ուշադիր քննությունն էլ ցույց է տալիս, որ հեղինակը քաջ գիտե իր նկարագրած թագավորության ճիշտ տեղագրությունը. նա այն գծել է հետևյալ կերպ. «Դարբանդ, որ ասի Կապանք սահմանակից Օղաց և Աղուանից»։ Բուն Աղվանքը Կուրի ձախափնյա երկրամասն է, որ-

---

[4] Ս. Ջալալյանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, մասն Բ, Տփխիս, 1858, էջ 420։ Մ. Բարխուդարյանց, Աղվանից երկիր և դրացիք, Թիֆլիս, 1893, էջ 134։ Մ. Սմբատյանց, Նկարագիր Ս. Ստեփաննոսի վանաց Սաղիանի, Տփխիս, 1896, էջ 544։

[5] Մ. Բարխուդարյանց, Պատմութիւն Աղուանից, հատ. Ա, Թիֆլիս, 1900, էջ 195։

[6] Նույն տեղում, էջ 195։ Հրատարակիչը Կրեյսար որոշիչը բացատրել է թագավոր։

[7] Մ. Չամչյանց, Պատմութիւն, հատ. Բ, Վենետիկ, 1785, էջ 1004։

*քան էլ Ուռհայեցու ժամանակ այդ երկրի անունը անորոշաբար գործածվեր, այնուամենայնիվ պատմական փաստ է, որ IX դ. վերջերից Համամ Բագրատունին վերականգնեց Աղվանից պետությունը և նրա հիմնական երկրամասը Կուրի ձախ ափին էր, Շաքե-Նուխի կենտրոնով։ Իսկ Ուռհայեցու հիշատակած օլ-երը անշուշտ օսերն են, թերևս ընդհանուր իմաստով հյուսիսային Կովկասի ժողովուրդները. բոլոր դեպքերում այդ Շաքե-Նուխիի և հյուսիսային ժողովուրդների արանքում է տեղավորում Ուռհայեցին* ՚Դարբանդ աշխարհն, որ ասի Կապանք:

*Դերբենդ քաղաքը, որ մինչև այժմ էլ գոյություն ունի, հնում հանրահայտ այն լեռնանցքի մուտքն էր, որտեղով հյուսիսային Կովկասի վաչկատուն և ռազմիկ ցեղերը արշավանքներ էին գործում Կովկաս ու Պարսկաստան և ավերում ու թալանում այդ երկրները։ Դարբանդ պարսկերեն դար+բանդ բառերից է կազմված, որոնցից առաջինը նշանակում է դուռ, երկրորդը՝ կապ, կապանք։ Դարբանդի շրջակա երկրամասը հայ հին մատենագրության մեջ կոչվել է Ճոր, Ճողա երկիր, իսկ բուն անցքը՝ կապանը՝ Ճորայ դուռն, Ճորայ պահակ։ Իսկ կապան աշխարհագրական տերմին է, որ նույնպես նշանակում է* «նեղ անցք երկու լեռների միջով, կիրճ,—նեղ ու երկայն կապանով շարժվում էր կարավանը: Ճորա կապանով անցան: Դերբենդը հոչակավոր կապան էր հին ժամանակ և մի քանի անուն էր կրում»[8]: *Հայաստանում կային շատ նման վայրեր, որոնք կապան էլ կոչվում էին, դրանցից մեկն էր հենց Սյունիքի նշանավոր բերդի տակ եղած անցքը՝ կապանը, որի մոտ շինված էր Բաղաց թագավորության մայրաքաղաք Կապանը, որից և առաջացավ քիչ հեռու հիմնված նոր քաղաքի Ղափան անունը։ Հենց այս Սյունյաց կապանի և Դերբենդի-Ճորա կապանի անուններն էլ պատճառ են դարձել թերահավատորեն վերաբերվելու Ուռհայեցու հաղորդմանը։*

*Այդ խնդիրը հիմնովին կպարզաբանվի Դերբենդի և Սյունյաց, Բաղաց կամ Կապանի թագավորացանկերի համեմատումից հետո։*

| Դերբենդի թագավորների ցանկը ըստ Ուռհայեցու | Սյունյաց թագավորների ցանկը |
| --- | --- |
| 1. *Վաչագան* | 1. *Սմբատ Ա.* |
| 2. *Գոշակտակ* | 2. *Վասակ Ա.* |
| 3. *Փիլիպէ* | 3. *Սմբատ Բ.* |
| 4. *Սևադա* | 4. *Գրիգոր Ա.* |
| 5. *Սենեքարիմ* | 5. *Սենեքերիմ* |
| 6. *Գրիգոր* | 6. *Գրիգոր Բ.* |
| 7. *Յովհանէս* | 7. *Հասան* |

*Հենց առաջին հայացքից պարզ երևում է, որ այս երկու ցանկերի անուններր քիչ շփման կետեր ունեն. յուրաքանչյուրի յոթ անուններից միայն Սենեքերիմ և Գրիգոր անուններն են առկա երկուսի մեջ էլ, այն էլ Սյունիքում՝ երկու Գրիգոր։ Քննենք Դերբենդի թագավորացանկի անունների մասին եղած պատմական տեղեկությունները, համեմատելով ամեն անգամ Սյունիքի ցանկին առնչվող կետերի հետ։*

---

[8] *«Հայերեն բացատրական բառարան», կազմեց Ստ. Մալխասյանց, հատ. Ա, Երևան, 1944, էջ 389։*

1. Վաչագան—*այս թագավորի մասին մատենագրական տեղեկություններ սահմանափակվում են Ուռհայեցու հաղորդածով, այն է՝ որ նա առաջին թագավորն է այս տոհմի և պապը Փիլիպե (նաև Փիլիպոս) թագավորի, որի մասին շատ տեղեկություններ կան։ Հաստատուն ժամանակագրություն նշել Վաչագանի համար նույնպես հնարավոր չէ. հայտնի է միայն, որ նրա թոռ Փիլիպեն 961 թ. ներկա գտնվեց Անի քաղաքը մայրաքաղաք օծելու հանդեսներին. հիմք ունենալով այդ, կարելի է ասել մոտավորապես, որ Վաչագանի ժամանակը երկու սերունդ ետ տանելով կհամընկնի X դարի սկզբներին։*

2. Գոշակտակ *(նաև Գոշազգակ)—որդի և հաջորդ Վաչագանի. սրա մասին ևս միակ տեղեկությունը Ուռհայեցու հաղորդածն է. նախորդի հաշվարկման հիման վրա տեղադրվում է X դարի առաջին կեսի մեջ։*

3. Փիլիպե *(նաև Փիլիպոս)—որդի և հաջորդ Գոշակտակի. ցանկի մեջ բոլոր եղածներից ավելի ընդարձակ մատենագրական տեղեկություններ կան սրա մասին։ Առաջինը դարձյալ Ուռհայեցու այն հաղորդումն է, որ 961 թ. Անին Հայաստանի մայրաքաղաք նվիրագործելու ճոխ հանդեսներին մասնակցում էր նաև այս Փիլիպոսը։ Հայտնի է, որ Աշոտ Գ Ողորմածը իր գահ բարձրանալուց 7 տարի անց որոշեց Անին դարձնել մայրաքաղաք։ Այդ երևույթին այնքան մեծ նշանակություն էր տրվել ժամանակին, որ* «Եւ լուեալ զայս ամենայն չուրջակայք և ամենայն թագաւորք ազգաց՝ Ափխազաց և Յունաց, Բաբելացւոց և Պարսից տուրս և սէրս հանդերձ պատուական ընծայիւք յուղարկէին ի փառաւորութիւն Հայոց թագաւորութեանն: Եւ յայնժամ զթագաւորն Աղուանից զՓիլիպէ և կաթողիկոսն զՏէր Յովհաննէսն, և զզօրսն, որ եկին զհետ թագաւորին և հայրապետին, և յուղարկեցին մեծամեծ տրօք և սիրով յաշխարհն Աղուանից»[9]: *Պատմագիրը ավելացնում է, որ եկել էր նաև Աղուանից կաթողիկոսը իր քառասուն եպիսկոպոսներից բաղկացած շքախմբով*[10]*։*

*Երկրորդ պատմական տեղեկությունը Փիլիպե թագավորի մասին վերաբերում է 974 թ.։ Այդ թվականին Հովհաննես Չմշկիկ հայազգի կայսրը մեծ բանակով դիմեց դեպի արևելք արաբների դեմ պատերազմելու համար, բայց ուսումնասիրողները կարծում են, որ նա գաղտնի նպատակներ ուներ նաև Հայաստանի նկատմամբ և այդ պատճառով էլ իր ճանապարհը փոխեց ու բանակեց Տարոնում*[11]*։ Հայ մանր թագավորությունները այս վտանգի հանդեպ միանում են Աշոտ Բագրատունու դրոշի տակ ու միացյալ 80.000 զորքով դիմում են դեպի արևմտյան սահմանները և բանակում Հարքում. բարեբախտաբար գործը պատերազմի չի հասնում։ Այս դեպքերին նույն Ուռհայեցին անդրադարձել է հետևյալ տողերով.*

«Յայնժամ ամենայն թագաւորազունքն Հայոց՝ ազատքն և իշխանքն և ամենայն մեծամեծքն աշխարհաց տանն արևելից ժողով արարին առ թագաւորն Հայոց Աշոտ Բագրատունի. թագաւորն Կապանին Փիլիպպէ և թագաւորն Աղուանից Գուրգէն, Արաս Կարուց տէրն և Սենեքերիմ Վասպուրականիս տէրն և Գուրգէն Անձևացեաց տէրն և բովանդակ ամենայն տունն

*9 Մ. Ուռհայեցի, էջ 4։*

*10 Նույն տեղում, էջ 3։*

*11 Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Գ, Երևան, 1952, էջ 15։*

Սասանու» (նաև Սասնու)[12]։ Նշենք, որ պատմագիրը այստեղ առանձին հիշատակում է նաև «Թագաւորն Աղուանից Գուրգէն» և համարում է Կյուրիկյան թագավորին. նա իր աշխատության մեջ երկու անգամ նման արտահայտություն ունի։

Սրանով էլ վերջանում են գրավոր տեղեկությունները Փիլիպեի մասին, ըստ որոնց ունենում ենք երկու հաստատուն թվականներ՝ 961 և 974—տասներեք տարվա տևողություն։

Սևադա—որդի և հաջորդ Փիլիպեի· այս թագավորի գործունեության մասին տեղեկություններ չկան, հայտնի է միայն այն, որ նա դեռևս «թագաւորազին», այսինքն գահ չբարձրացած ժամանակ, իր դուստր Շահանդուխտին կնության էր տվել Սյունյաց Գրիգոր Առաջին թագավորին։ Այս առթիվ Ստ. Օրբելյանը գրում է. «Իսկ Գրիգոր առեալ էր իւր կին զամենօրհնեալ և մեծահաւատ բարեպաշտուհին Շահանդուխտ ի տանէն Աղուանից՝ դուստր նոցին թագաւորազինն մեծին Սևադայի»[13]։ Հայտնի է նաև, որ Սևադան ունեցել է նաև մի երկրորդ աղջիկ ևս՝ Կատա անունով, որը ապրում էր իր սյունյաց թագուհի քրոջ մոտ և այդ երկուսը միասին 1086 թ. Սյունիքի Կապան մայրաքաղաքի մոտ գտնվող Վահանավանքում, որը Սյունյաց թագավորների տապանատունն էր՝ հիմնադրված դեռևս 911 թ., շինել են կրկնահարկ մի եկեղեցի ս. Աստվածածնի անունով, որի առթիվ գրել են ընդարձակ արձանագրություն[14]։

Այդտեղ այս երկուսի անունով գտնվել են ևս երեք արձանագրություններ, որոնցից մեկը խաչքարի վրա է և բովանդակությունից երևում է, որ իրենց մոր հիշատակին են կանգնեցրել. ցավոք, հենց մոր անունը ջարդված է։ Հետաքրքիր է նաև մյուս արձանագրությունը, որը մեջ ենք բերում եղած վիճակով.

Ես տր Ստեփանոս, Աղվանից կաթողիկոս
ճեղեալ ի տաճկաց եկա եւ հանգեա [Աստուածա]ծէր
Թագուհեայ Շահանդուխտին եւ Կատային
շինած եկեղեցոյս գաւիթս որ Ած[15]....

Շահանդուխտը և Կատան Սյունիքում գործուն հասարակական կյանք են վարել, նրանք իրենց եղբայր Սենեքերիմ թագավորի հետ Տաթևի վանքին են նվիրել Արիտ ավանը 1085 թ.[16]։ Սյունյաց պատմագիրը հետևյալ կերպ է բնորոշում Շահանդուխտի գործունեությունը.

«Բայց այս Սենեքերիմ և քոյրն իւր Շահանդուխտ բազումս արարին արդիւնս և շինուածս եւեղիս ի վանսն Յովհաննու. նաև բազում պարգևս և ժառանգութիւնս ընծայեցին ի սուրբ մայրաքաղաքն աթոռ ի Տաթեւ, զոր եւ կարգեցից աստ»[17]։ Օրբելյանի հենց այս հատվածի վերջում հիշատակվում է նաև նրանց մոր անունը՝ Սոփիայ, որի հիշատակին կարգվել է 20 պատարագ։

---

[12] Ուռհայեցի, էջ 17։

[13] Ստեփանոս Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 318։

[14] «Դիվան հայ վիմագրության», պր. II, Երևան, 1960, էջ 138—139։

[15] Նույն տեղում, էջ 138—139։ Այս կաթողիկոսը մահացել է 1091 թ.։

[16] Ստ. Օրբելյան, էջ 322—323։

[17] Նույն տեղում, էջ 321։

Շահանդուխտը մահացել է 1116 թ. ինչպես գրում է Ստ. Օրբելյանը. «Իսկ ի 565 թուին կատարեցաւ մեծաւ ճգնութեամբ սուրբ թագուհին Շահանդուխտ՝ քոյրն Սենեքերիմայ յազատրին»[18]. վստահ կարելի է ասել, որ նա թաղված կլինի Վահանավանքի թագավորական դամբարանատանը, համանաբար իր շինել տված Աստվածածին եկեղեցու ներքնահարկում։ Իսկ Կատան ամուրի կյանք է վարել, ինչպես անվանում է նրան պատմիչը «սրբասնունդ օրիորդ Կատայ»[19]։

Այսպիսով, Սևադայի համար որևէ հաստատուն թվական չունենք. նրա դուստր Շահանդուխտի վերաբերյալ մեր հիշատակած թվականներից ամենավաղը 1085-ն է։ Շահանդուխտի ամուսին Գրիգոր Ա թագավորի մասին էլ արձանագրական թվականներից ամենավաղը իջնում է մինչև 1046-ը[20], ուստի մեկ սերնդով դրանցից առաջ Սևադայի ժամանակը համընկած կլինի XI դ. կեսերին։ Մոտավոր այս ժամանակը նկատի ունենալով Սևադայի համար, նրան կարելի է վերագրել պատմական հետևյալ իրողությունը. 1040—1041 թթ. Դվինի քուրդ ամիրա Աբուլսուարը, որը Կյուրիկյան Դավիթ Անհողինի փեսան էր՝ քրոջ ամուսինը, միացած Տուղրիլի հետ արշավում է և գրավում Պարտավը, Գանձակը ու շրջակաները և սպառնում է իր իսկ աներորդու հողերին, որոնք այդ ժամանակ տարածված էին մինչև Շամքոր։ Դավիթ Անհողինը ուներ սեփական 10 հազար զորք միայն, այդ պատճառով էլ պատգամավորների միջոցով օգնություն է խնդրում Բագրատունի Հովհաննես-Սմբատից, ինչպես և աբխազների ու Կապանի թագավորներից, որոնցից Անիի թագավորն ուղարկում է 4 հազար, աբխազներինը՝ նույնպես 4 հազար և Կապանի թագավորը՝ 2 հազար օգնական զորք. միացյալ բանակը ջարդում է և հալածում գերազանց թշնամուն[21]։

Դեպքերը նկարագրող Մ. Ուռհայեցին չի հիշատակում Կապանի թագավորի անունը, բայց նրա թագավորելու ժամանակը համընկնում է Սևադայի տարիներին[22]։

Սենեքերիմ—որդի Սևադայի. այս թագավորի մասին եղած տեղեկությունները անորոշ են. հաստատ է, որ նա Սևադայի որդին է, բայց և ճիշտ է, որ նա հրավիրվել է Սյունիք և այդ երկրի ակնառու թագավորներից մեկն է եղել և դավադրաբար սպանվել ու թաղվել է Վահանավանքում՝ Սյունյաց թագավորների տապանատանը։ Սակայն, բացի Ուռհայեցու Դերբենդի թագավորների ցանկից, նրա անունով մի տապանաքար է հայտնաբերվել Դերբենդի թագավորների խաչմազ գյուղի մոտի գերեզմանոցում։ Նախ շարադրենք Սենեքերիմի մասին եղած գրավոր տեղեկությունները որպես Սյունիքի թագավոր, որոնք ավելի մանրամասն են։ Վերևում տեսանք, որ Սյունիքի թագավոր Գրիգոր Ա-ն ամուսնացած էր Դերբենդի թագավորի Սևադայի դուստր Շահանդուխտի հետ. արքայական այս զույգը զավակներ և ժառանգ չի ունենում և այս պատճառով «Ածեն յԱղուանից զՍենեքերիմ՝ եղբայրս Նորին

---

[18] Նույն տեղում, էջ 335։

[19] Նույն տեղում, էջ 322։

[20] Այս արձանագրությունը գտնվել է 1968 թ. Վահանավանքում կատարվող աշխատանքների ընթացքում և հրատարակված չէ։

[21] Մ. Ուռհայեցի, էջ 79—82։

[22] Մ. Բարխուդարյանցը Սենեքերիմ թագավորին է վերագրում այդ եղելությունը, տե՛ս Պատմություն Աղվանից, մաս Ա, էջ 145։

Շահանդխտոյ թագաւորազն մանուկ... եւ ստանայ զսա ժառանգ իւրեանց թագաւորութեանն»[23]:

Սենեքերիմը լավ հարաբերություններ է ստեղծում Մելիք շահի հետ և շենացնում ու բարեկարգում է երկիրը մինչև 1092 թ.: Այդ թվին մահանում է Մելիք շահը, որից հետո Պարտավի, Գանձակի և այլ շրջակա ամիրաներ միացյալ ուժերով հարձակվում են Սենեքերիմի վրա. չկարողանալով բաց ճակատով դիմադրել, Սենեքերիմը փակվում է իր բերդում, բայց թշնամիների կողմից ուղարկված Շիրակի իշխաններից Գրիգոր Ապիրատը համոզում է նրան գնալ ամիրաների մոտ գործը խաղաղությամբ վերջացնելու համար. վերջիններս, ըստ սովորության, խարդախորեն սպանում են Սենեքերիմին, որից հետո նրա դիակը հարազատները թաղում են Սյունյաց թագավորական դամբարան Վահանավանքում, մոտ 1094 թ.:

Այս բոլորից պարզ երևում է, որ իրոք Սյունյաց թագավոր Սենեքերիմը Դերբենդի Սևադա թագավորի որդին է և մանուկ հասակից տարվել է Սյունիք, թագավորել, մահացել ու թաղվել է այստեղ: Նրան հաջորդել է իր որդին՝ Գրիգոր Բ-ն: Այս բոլորից հետո մնում է անհասկանալի, որ Սենեքերիմ անունով մի թագավոր էլ հիշատակված է որպես նույն հոր որդի և ժառանգ Դերբենդի թագավորության, բայց իրական, որովհետև նրա տապանաքարը տեսել և տապանագիրն արտագրել է Սարգիս եպս. Ջալալյանցը: Իսկ Մ. Բարխուդարյանցը հաղորդում է, որ խաչմազցիները պատմել են իրեն, որ «Ամեն տարի մեռելոցի օրերում գալիս էինք գյուղիցին, օրհնել տալիս Սենեքերիմ թագավորի գերեզմանը. ապա եղերերգ երգելով. լալով արտասուք էր թափում կանանց դասն. և ապա բաց էինք անում սուփրաներ. տալիս թագավորի անունը և խմում ողորմաթասը»[24]: Ցավոք, Սենեքերիմի տապանագիրը թվական չունի, բայց քանի որ նրա հոր՝ Սևադայի մոտավոր ժամանակը որոշվում է XI դ. առաջին կեսերով, ուրեմն Սենեքերիմը նույն դարի երկրորդ կեսի գործիչ է, ասել է՝ ժամանակով ևս համընկնում է Սյունիքի Սենեքերիմ թագավորի հետ, որը սպանվել է մոտ 1094 թ.:

Այսպիսով, մատենագրական և արձանագրական նյութերով հաստատվում է, որ Դերբենդի թագավոր Սևադայի երկու որդիները, երկուսն էլ Սենեքերիմ անունով, թագավորել են մեկը Դերբենդում, մյուսը՝ Սյունիքում: Հայոց մեջ սովորական չէ երկու որդիներին նույն անունը տալ, բայց դրա դիմաց հայտնի են երկանուն անձինք, թեկուզ Բագրատունի թագավորներից՝ Հովհաննես-Սմբատ: Ինչպես և Աղվանքի թագավորությունը վերականգնող Համամը, որը կոչվել է նաև Հովհաննես, նույն և Սենեքերիմ-Հովհաննես թագավոր Փառիսոսի, մեռած 1003 թ.: Ներկա դեպքում, ինչպես ենթադրաբար, կարելի է կարծել, որ Սևադայի որդիներից մեկը՝ Սենեքերիմը, որն ըստ երևույթին, ավագն էր, տարվել է Սյունիք, և երկրորդին Դերբենդի թագավոր օծելիս ի պատիվ առաջինի, որը միջնադարյան օրենքով օրինական ժառանգն էր թագավորության, վերանվանել են նույնպես Սենեքերիմ, թերևս երկրորդ անունը ջնջելով:

6. Գրիգոր — որդի և հաջորդ Սենեքերիմի. այս թագավորի մասին գրավոր տեղեկությունը միայն Ուռհայեցու հաղորդածն է, բայց նրա տապանա-

[23] Ստ. Օրբելյան, էջ 318—319:

[24] Մ. Բարխուդարյանց, Աղվանից երկիր, էջ 134:

քարը գտնվել է Խաչմազ գյուղի Թագավորական գերեզմանատան մեջ, Գրիգոր Կրեյսար տապանագրով։ Սրա թագավորության սկիզբը ճշտորեն հայտնի չէ, նկատի ունենալով իր հոր՝ Սենեքերիմի մասին մեր շարադրածները, պիտի թագավորած լինի XI դ. վերջին տասնամյակին կամ XII-ի սկզբից. և, ըստ Ուռհայեցու հաղորդման՝ «դեռ եւս կենդանի էր մինչեւ գրէաւ զայս մատենագրութիւնս մեր». իսկ Ուռհայեցու վախճանը համարվում է 1136 թ.։ Թե դրանից հետո էլի որքան է ապրել Գրիգորը՝ անհայտ է։

Այս թագավորի առնչությամբ անհրաժեշտ է անդրադառնալ նաև Սյունիքի թագավոր Գրիգորի հարցին. սա որդին և հաջորդն էր Սյունյաց Սենեքերիմ թագավորի, որը սպանվեց 1093—94 թթ., որից հետո Գրիգորը փոխարինեց իր հորը. ուներ Սմբատ և Սևադա անունով եղբայրներ և Կատա անունով քույր. թագավոր դարձավ 1094-ից հետո, բայց Ստ. Օրբելյանի բնորոշմամբ «նուազ և ընդաղօտ թագաւորեալ»[25], ասել է՝ աննշան և կարճակյաց, ուրեմն և ավելի առաջ մեռած, քան Դերբենդի Գրիգոր թագավորը[26], որը 1136 թ. դեռ կենդանի էր։

Յովհաննես—որդի և հաջորդ Գրիգորի. սրա մասին միակ տեղեկությունը իր գերեզմանաքարի վրայի տապանագիրն է, գտնված իրենց տոհմական տապանատանը, Խաչմազ գյուղի մոտ՝ «Յովհաննէս Կրեյսար», հրատարակված Մ. Բարխուդարյանցի կողմից. նկատի ունենալով իր նախորդի ժամանակաշրջանը, պիտի թվագրվի XII դ. կեսով։

Ընդհանրացումներ անելուց առաջ անհրաժեշտ է մի քանի խոսքով անդրադառնալ Սյունյաց թագավորների ցուցակի առաջին և վերջին թագավորներին և նրանց ժամանակագրության հարցին։

Առաջինը, որ թագավոր ճանաչվեց, դա Սմբատ Ա-ն էր. սրա մասին բավական ընդարձակ մատենագրական և արձանագրական տեղեկություններ կան։ Նա Սյունյաց հին իշխանական տոհմից է, որին Ստ. Օրբելյանը կոչում է «աւագ Աշոտեանք», իսկ մոտիկ տոհմագրությունը հետևյալն է՝ Սահակի որդի և Աշոտի թոռ։ Սմբատը դեռ 963 թ. Տաթևին նվիրելով Հարժիս և Ծածարդ գյուղերը, կալվածագրի մեջ հիշատակվում է Սյունյաց իշխան. նրա թագավոր դառնալը համարվում է մոտ 970 թ. և մահը՝ 998 թ. մոտ։ Սյունիքի այդ առաջին թագավորի կինը Դերբենդի Սևադա իշխանի դուստրն էր, որ դեռ 1000 թ. հիշվում է կենդանի։

Իսկ Սյունյաց ցանկի վերջին թագավոր Հասանը արդեն եկվոր է. նա Խաչենի Սակոյանց տոհմից էր, իշխան Վախտանգի որդին. Սյունյաց նախավերջին Գրիգոր Բ թագավորը արու ժառանգ չուներ, այդ պատճառով էլ իր աղջիկ Կատային ամուսնացրեց այս Հասանի հետ և կարգեց իրեն հաջորդ։ 1170 թ., երբ թուրքերը պաշարեցին Բաղաբերդը, Հասանը փախավ ընտանիքով իր ծննդավայրը, որով և վերջացավ Սյունիքի թագավորությունը՝ տևելով ուղիղ 200 տարի։

Դերբենդի և Սյունիքի թագավորների այս ցանկից պարզ երևում է, որ նույնացման ոչ մի հիմք չկա. այսպես՝ յուրաքանչյուր ցանկի 7 անուններից միայն երկուսն են նույնանուն, Սենեքերիմ և Գրիգոր, բայց և Սենեքերիմն

---

[25] Ստ. Օրբելյան, էջ 320—321։

[26] Պատմագրի այս որակումից հետո անհասկանալի է մնում, թե ինչու Գրիգորի մահը նա դնում է 1166 թ., տե՛ս էջ 337։

էլ Դերբենդի Սևադա թագավորի որդին է։ Սյունյաց առաջին թագավոր Սմբատը գահակալել է 970 թ., մինչդեռ Դերբենդի ցանկի երրորդ թագավոր Փիլիպեն արդեն թագավոր էր 961 թ., իսկ նրանից առաջ դեռևս թագավորներ են Գոշակտակն ու Վաչագանը. Սյունիքի թագավորները թաղվել են Սյունիքում, Տաթևում և Վահանավանքում. իսկ Դերբենդի երեք թագավորների տապանաքարերը գտնվել են Դերբենդի մոտ, Ճորա երկրում, Խաչմազ գյուղի հին գերեզմանատան մեջ։ Ինչպես տեղագրական, այնպես էլ այս երկու թագավորացանկերի անունների և նրանց ժամանակագրության ճշտումից ակնբախ է դառնում երկու թագավորությունների միանգամայն տարբեր և անկախ գոյության փաստը։

Նախ քան առաջ անցնելը ուզում ենք նշել մի կարևոր փաստ ևս. այս երկու թագավորատոհմերի մեջ հենց սկզբից գոյություն են ունեցել սերտ կապեր, ոչ միայն խնամիական, այլև Սյունյաց թափուր գահի վրա Կապանից բերված Սենեքերիմին են բազմեցրել, Աղվանից հալածական կաթողիկոսները Սյունիքում են ապաստան գտել։ Իսկ Ստ. Օրբելյանը, նկարագրելով Սյունիքի թագավորների դամբարանատունը Վահանավանքում, ավելացնում է. «Յորում հանգուցեալ կան ի շիրմի բազում թագաւորք և թագուհիք Աղուանից և Բաղաց և բազում իշխանք փառաւորք Սիսական աշխարհիս»[27]:

* * *

Պիտի պարզենք այժմ հայ-աղվանական այս պետության առաջացման հարցը, որը սակայն անհնարին է առանց հայ-աղվանական սահմանների, քաղաքական հարաբերությունների և աղվան ժողովրդի սոցիալ-էթնիկական կազմի թռուցիկ ակնարկի։

Աղվանքի սահմանների և ժողովրդի մասին հնագույն տեղեկությունները հաղորդում են հունա-հռոմեական դասական հեղինակները, որոնցից համեմատաբար ավելի մանրամասն՝ Ստրաբոնը, ըստ որի՝ «Աղվանքը գտնվում է Վրաստանի և Կասպից ծովի միջև. արևելքից հասնում է ծովին, իսկ արևմուտքից սահմանակից է Վրաստանին: Մնացյալ կողմերից հյուսիսը պաշտպանված է Կովկասյան լեռներով. սա բռնում է Աղվանից դաշտավայրի վերևը, իսկ ծովին մոտիկ մասը ավելի կոչվում է Կերավնիա, իսկ հարավային սահմանի ամբողջ երկարությամբ տարածվում է Հայաստանը, որ հարուստ է դաշտերով և լեռներով»[28]: Քիչ հետո նույն հեղինակը Հայաստանի նկարագրության մեջ գրում է. «Հայաստանի ներսում կան շատ լեռներ և շատ լեռնադաշտեր, որոնց մեջ խաղողի այգին հեշտությամբ չի աճում. նաև շատ հովիտներ, ոմանք չափավոր, ոմանք էլ շատ բերրի, ինչպես Արաքսենի դաշտը, որով Արաքս գետն է հոսում մինչև Աղվանքի ծայրը և թափվում է Կասպից ծովը, և սրա հետ Շակաշենը՝ սահմանակից Աղվանքին և Կուր գետին, հետո Գուգարքը....»[29]: Երկու երկրների այս նկարագրությունից պարզ երևում է, որ Կուր գետը եղել է նրանց ընդհանուր սահմանը, որովհետև ըստ հեղինակի Հայաստանի բերրի դաշտ հանդիսացող Արաքսենի դաշտը դա հայկական Փայտակարան նահանգն է, իսկ Շակաշենը՝ մինչև Գուգարքի

[27] Ստ. Օրբելյան, էջ 240։

[28] Ստրաբոն, քաղեց և թարգմանեց Հ. Աճառյան, Երևան, 1940, էջ 31։

[29] Նույն տեղում, էջ 55։

սահմանը՝ Ուտիք նահանգը, այդ երկու նահանգներն էլ կազմում են Կուրի աջափնյա դաշտավայրը՝ մինչև Կասպից ծով։

Բոլոր անտիկ հունա-հռոմեական գրողները Հայաստանի և Աղվանքի սահմանի վերաբերյալ նույն և նման փաստեր են հաղորդում, ինչ որ Ստրաբոնը։ Բերենք մի երկու հաղորդում ևս. Պլինիոս Ավագը գրում է. «Աղվանները տարածված են Կովկասյան լեռների վրա և նրանց երկիրը ձգվում է մինչև Հայաստանի և Իբերիայի սահմանը հանդիսացող Կուր գետը»[30]։ Հետո նույն հեղինակը, ավելի որոշակի ճշտելով Աղվանքի հարավային սահմանը, գրում է. «Ամբողջ հարթությունը՝ մինչև Կուրը՝ տիրում է աղվանների ժողովուրդը»։ Իսկ Պտղոմեոսը գրում է. «...Կուրը, որ հոսում է ողջ Իբերիայով և Աղվանքով՝ նրանից անջատելով Հայաստանը»[31]։

Հայ հին մատենագրությունը ևս, մինչև Հայաստանի պետական անկախ կյանքի վերացումը հայ-աղվանական սահմանների միայն այս իրողությունն է նշում, այսինքն՝ որ Կուր գետն է այդ երկու հարևան ու բարեկամ երկրների բնական սահմանը։ Նշենք մի քանի փաստեր մեր աղբյուրներից։ Հին Հայաստանի աշխարհագրության ամենանշանավոր երկը՝ Շիրակացու Աշխարհացույցը, որը Արշակունյաց Հայաստանի իրական վիճակի նկարագրությունն է տվել՝ հայ-աղվանական սահմանի վերաբերյալ նշել է. «Աշխարհն Աղուանից, որ ընդ մեջս է գետոյն Կուրայ և Կովկաս լերինն»[32]։ Զիրավի մեծ ճակատամարտից հետո, ըստ Փ. Բուզանդացու հաղորդման, Մուշեղ սպարապետը պատժիչ արշավանքներ է ձեռնարկում Հայաստանի սահմանամերձ դրավված և ապստամբած նախարարությունների դեմ՝ «Եւ զԿուր գետ՝ որպես և յառաջն լեալ էր, ընդ երկիրն Աղուանից և ընդ երկիրն իւրեանց սահման արարեալ կացուցանէին»[33]։ Հայտնի է, որ Կուրի աջափնյա Ուտիք և Փայտակարան նահանգները դեռևս Օրվանդունիների ժամանակներից հայոց արքունական տան կալվածներն ու ձմեռանոցներն են եղել. այսպես, III—IV դդ. մ. թ. ա., երբ դեռ Աղվանքում պետականություն չէր առաջացել, Օրվանդունի հայ թագավորների ձմեռանոցը Ուտիք նահանգում էր, և ըստ Խորենացու՝ երբ Արտաշեսը Հայաստանը միավորելու նպատակով իր զորքով շարժվեց Երվանդի վրա, նա գտնվում էր Ուտիքում, իսկ Փայտակարան նահանգի համանուն քաղաքի մասին Տրդատի կողմից քրիստոնեություն և դպրություն տարածելու առթիվ Ագաթանգեղոսը գրում է. «Ի Փայտակարան քաղաք արքայութեանն հայոց»[34]։ Հիշենք նաև, որ ըստ Զորանամակի Փայտակարանը հայ կենտրոնական բանակին տալիս էր 300 զինվոր և նրանց նախարարը գրավում էր արքունիքի 70 բարձերից իններորդ տեղը, իսկ Ուտիքի իշխանը նույն բանակին տրամադրում էր 1000 զինվոր։

Կուրի ձախ ափից մինչև Կովկասի լեռնաշղթան տարածվող Աղվանքում, ըստ նույն Ստրաբոնի հաղորդման, ապրում էին 26 ցեղեր, որոնցից յուրաքանչյուրն ուներ իր թագավորը և խոսում էր իր լեզվով, դրանք թափառական խաշնարածներ են, հաշվել գիտեն մինչև հարյուրը միայն, ծանոթ չեն

30 К. Ган, Известия древних греческих и римских писателей о Кавказе, I, Тифлис, 1884, էջ 109։

31 Նույն տեղում, էջ 170։

32 Մ. Խորենացի, Աշխարհացոյց, Վենետիկ, 1881, էջ 29։

33 Փավստոս Բուզանդացի, Պատմութիւն հայոց, Վենետիկ, 1832, էջ 210։

34 «Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1909, էջ 439։

*չափ ու կշռի և դրամի*[35]*. միայն առաջին դարում մ. թ. ա. այդ ցեղերից աղվանները, որոնք ապրում էին երկրի կենտրոնական և արևմտյան մասերի բարեբեր դաշտավայրում և տնտեսապես ավելի զարգացած էին, կարողացան միավորել նշված 26 ցեղերից ոմանց և կազմեցին պետություն, որի մայրաքաղաքն էր Կապաղակը՝ ներկա Նուխիի մոտ։ Աղվանական այս առաջին պետականության օրոք նրանք Հայաստանի դաշնակիցներն էին, և նրանց զորքերը Տիգրան Մեծի բանակում կռվում էին հռոմեացիների դեմ, Տիգրանի պարտությունից հետո էլ Կուրի ափին դիմադրեցին Պոմպեոսի պատժիչ արշավանքներին։ Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ աղվանական այդ պետականությունը չկարողացավ նշված 26 ցեղերին միաձուլել, լեզվով ու մշակույթով միացյալ ժողովուրդ կազմել. և դա շնորհիվ ցեղային այդ միավորների աշխարհագրական, տնտեսական և լեզվական խիստ տարբերությունների։ Ցավոք, անտիկ հեղինակները այդ 26 ցեղերի անունները լրիվ չեն հաղորդել. բայց դրա փոխարեն հայ հին մատենագրությունը պահպանել է ավելի շատ ցեղերի անուններ, որոնք բնակվում էին Կովկասի փեշերին։ Ահա այդ երկու կարգի աղբյուրների մեջ հիշատակվածները.*

| Հունա-հռոմեական աղբյուրների մեջ | Հայկական աղբյուրների մեջ | |
|---|---|---|
| 1. *Աղվաններ* | 1. *Փոխք* | 13. *Լփինք* |
| 2. *Ուդիներ* | 2. *Թաւասպարք* | 14. *Վատն* |
| 3. *Գելեր* | 3. *Հեճմատակք* | 15. *Գաւք* |
| 4. *Լեգեր* | 4. *Իժմախք* | 16. *Խրսան* |
| 5. *Գարգարներ* | 5. *Գաթք* | 17. *Փասխք* |
| 6. *Սիլվեր* | 6. *Գղուարք* | 18. *Փուսխք* |
| 7. *Դիդուրներ* | 7. *Գուգարք* | 19. *Փիքանակք* |
| 8. *Օլոնդներ* | 8. *Շիղբք* | 20. *Բագանք* |
| 9. *Իսոնդներ* | 9. *Ճիշբք* | 21. *Ուտիք* |
| 10. *Հերեր* | 10. *Բաղասաճք* | 22. *Կասպք* |
| 11. *Կասպեր* | 11. *Եգերսուանք* | 23. *Ջողայք* |
| 12. *Սողեր* | 12. *Մազքութք* | |

*Սպառիչ չեղող այս ցանկերը, առաջին իսկ հերթին, նշում են Աղվանքի իրոք որ բազմացեղ բնույթը, մյուս կողմից ապացուցում են, որ Աղվանքում երբեք միաձույլ ժողովուրդ չգոյացավ։ Եթե հունա-հռոմեական ցանկը, որն արտահայտում է շուրջ առաջին դարերը եղած իրավիճակը, իսկ հայկական աղբյուրները նրանից մոտ 4—5 դար հետո եղածն են արձանագրում, ասել է, որ այդ ցեղերը իրոք ինքնուրույն էին մնացել, իսկ դրանից հետո արդեն Աղվանքում վերացավ պետական իշխանությունը, և եթե ձուլվելու հարց կարող է լինել, ապա նոր տիրող պարսիկների և ավելի ուշ արաբների մեջ կարող էին ձուլվել այդ ցեղերը։ Բայց իրականությունն այն է, որ այդպես չեղավ. IX—X դդ. արաբ հեղինակները այդ առթիվ շատ կարևոր տեղեկություններ են հաղորդում. օրինակ, Իբն Հաուկալը գրում է, որ առաջ, երբ պատմում էին, թե Ադրբեջանում և հարևան երկրներում գոյություն ունեին բազմաթիվ լեզուներով խոսող ժողովուրդներ, ինքը չէր հավատում, «մինչև*

35 Страбон, География, М., 1964, *էջ 475*։

որ ինքս տեսա բազմաթիվ քաղաքներ, և ամեն մի քաղաքում կա իր լեզուն»[36]:

*Իսկ Իբն Ֆակիհը մեզ հետաքրքրող կովկասյան լեռնալանջերի ժողովուրդների մասին գրում է.* «Կովկասի (բնագրում Կաբակ) լեռներում ապրում են 72 ցեղեր և յուրաքանչյուր ցեղ չի հասկանում իր հարևան ցեղի լեզուն այլ կերպ, քան թարգմանների միջնորդությամբ»[37]: *Յակուտ ալ-Համավին ևս (XIII դ.) գրում է.* «Բաբ ալ-Աբվաբի հարակից լեռնաշղթայի վրա ապրում են 70-ից ավելի ցեղեր, յուրաքանչյուրն ունի իր լեզուն»[38]: *Հետո կտեսնենք, որ բազմացեղ իրականության այդ պատկերը մասամբ պահպանվել է մինչև մեր օրերն իսկ:*

*Նման բազմացեղ իրականության մեջ շատ հեշտությամբ տիրապետող դերը կարող է անցնել մեկ ցեղից մյուսի ձեռքը. և իրոք, եթե առաջին դարերում Աղվանից երկրի միջին մասերում ապրող աղվան ցեղը դարձավ քաղաքական գլխավոր դերակատարը, ապա մեր թվականության IV դարի սկզբներից այդ դերում հանդես եկավ մազքութների ցեղը, որը թե՛ տերիտորիայով և թե՛ ծագումով բոլորովին տարբեր էր աղվաններից: Մազքութների ցեղն ապրում էր Աղվանքի ամենաարևելյան ծայրում, Կասպից ծովի ափին, Սամուր գետի ստորին ավազանում և ներկայիս Սովետական Ադրբեջանի Կուսար, Խաչմազ, Ղուբա և Ղոնաղքենդի շրջաններում. եթե աղվանները պատկանում էին կովկասյան լեզվախմբին, ապա մազքութները՝ իրանական լեզվախմբի սկյութա-սարմատական ճյուղին: Մազքութների Արշակունի պետության մայրաքաղաքը գտնվում էր Սամուր գետի դելտայի մոտերքը և կոչվում էր Չողա, որի անունով էլ հաճախ ամբողջ երկիրն էր կոչվում Չորա կամ Չողա երկիր. հայ մատենագրության մեջ այստեղի լեռնանցքը կոչվում էր Ճորա պահակ: Փաստորեն հայ մատենագրության, այդ թվում նաև Մովսես Կաղանկատվացու աշխատության մեջ, Աղվանից թագավորությանը վերաբերող բոլոր տեղեկությունները սկսվում են հենց այս մազքութների պետությունից: Մ. Կաղանկատվացին Աղվանքի նախապետական շրջանը շարադրում է ըստ Խորենացու, այսինքն Վաղարշակի կողմից Սիսակյան ցեղից Առան նահապետին նշանակելը, որի անունից և Աղվանք, իսկ պետական կյանքի պատմությունը սկսում է «քաջ» Վաչագանից,* «որ էր ի մեծ ազգեն Արշակունեաց»[39]: *Այս տոհմից պատմիչը հիշատակում է հետևյալ տասը թագավորներին՝* Վաչագան Ա, Վաչե Ա, Ուռնայր, Վաչագան Բ, Մրհաւն, Սատոյ, Ասայ, Եսուաղէն, Վաչէ Բ և Վաչագան Գ: *Աղվանքի Մազքութ-արշակունյան այս թագավորության առաջացման մասին ավելի մանրամասն տեղեկություններ հաղորդում են մեր մյուս պատմիչները. Մ. Խորենացին հաղորդում է, որ Հայաստանի հյուսիս-արևելյան նահանգի պետական պաշտոնյաները՝ գործակալները և Փայտակարան քաղաքի վերակացու-*

36 Н. А. Караулов, Сведения арабских географов IX и X веков по р. Х о Кавказе, Армении и Азербайджане, «Сборник материалов для описания местностей и племен Кавказа», вып. XXXVIII, Тифлис, 1908, *էջ 85:*

37 *Նույն տեղում, XXXI, էջ 33:*

38 *«Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին», կազմեց Հ. Բ. Նալբանդյան, Երևան, 1965, էջ 24:*

39 *Մովսես Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1913, էջ 51:*

ները գալիս են Հայոց Տրդատ թագավորի (298—330) մոտ և խնդրում, որ Լուսավորչի տոհմից իրենց հոգևոր առաջնորդ ուղարկի, Տրդատը պատանի Գրիգորիսին է ուղարկում «Հանդերձ Սանատրկաւ ոմամբ յիւրմէ ազգէն Արշակունեաց»[40]: Տեղ հասնելուց հետո այդ Սանատրուկը սպանում է Գրիգորիսին և ապստամբելով Տրդատից, իրեն թագավոր է հռչակում և Փայտակարանը դարձնում մայրաքաղաք. ավելի ուշ ուղարկում են զորքեր, որոնք գրավում են Փայտակարանը, բայց Սանատրուկը փախչում է Պարսկաստան: Այս դավադրության հրահրողը Պարսկաստանն է եղել, որովհետև քիչ հետո, արդեն Տրդատի որդի Խոսրովի օրոք (330—338) այս Սանատրուկը պարսից Շապուհ արքայի դրդմամբ հավաքում է իր շուրջը «բնակիչք հիւսիսոյ Կաւկասու», արշավում է դեպի Հայաստան և հասնում մինչև Վաղարշապատ. այստեղ Օշականի մոտ տեղի է ունենում ճակատամարտ, ուր թշնամի զորքը պարտվում է և փախչում[41]:

Փավստոս Բուզանդացին նույն դեպքերի նկարագրությանը նվիրել է երկու գլուխ՝ Զ, Է, և ավելի մանրամասն տեղեկություններ է հաղորդում այս թագավորության վերաբերյալ, բայց Սանատրուկ անվան փոխարեն Սանեսան է կոչում մազքութների թագավորին. ըստ Բուզանդացու Գրիգորիսը Ատրպատականի Փայտակարանի կողմերի հոգևոր գործերը կարգավորելուց հետո «եհաս նա մինչև նամբար բանակին Արշակունւոյ արքային Մազքթաց. որոյ անուն իւր Սանէսան կոչէր: Քանզի և նոցա և Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեանն»[42]: Այնուհետև, Գրիգորիսին նահատակելուց հետո տեղի է ունենում նրանց արշավանքը: Սանեսանի բանակը կազմված էր Կովկասի փեշերին ապրող վաչկատուն և ավազակաբարո ցեղերից, որոնցից պատմագիրը հիշատակում է 12-ի անունները (տես մեր երկրորդ ցանկը) ու ավելացնում «և այլոց»: Այդ անուններից դատելով՝ ցեղերի տարածման շրջանը եղել է ծովափից սկսած մինչև Վրաստանի բոլոր լեռնալանջերը, իսկ հարավային սահմանը պատմագիրը նշում է հետևյալ խոսքերով. «եկն անց ըստ իւր սահմանն ընդ գետն մեծ ընդ Կուր և եկն տարածեցաւ ելից զերկիրն Հայոց աշխարհին»: Այնուհետև տեղի է ունենում Օշականի պատերազմը, որի ընթացքում թշնամին պարտվում է և Սանեսանը սպանվում. հետաքրքիր է, որ երբ Սանեսանի գլուխը բերում ներկայացնում են Հայոց արքային, վերջինս սկսում է լալ և ասում է՝ «եղբայր իմ էր ազգաւ Արշակունի»[43]: Գերազանցապես իրանական էթնիկ հիմքի և Արշակունի տոհմի գլխավորությամբ ստեղծված այս պետությանը տրված Աղվանից պետություն անունը զուտ աշխարհագրական և պայմանական իմաստ ունի: Կովկասյան լեռնալանջերից նման արշավանքներ դեպի Հայաստան և հարևան երկրներ տեղի էին ունեցել և՛ առաջ, և՛ դրանից հետո էլ, հաճախ Պարսկաստանը, Հայաստանը և Բյուզանդիան դրդում էին այդ ցեղերին ավերի ենթարկելու իրենց հակառակորդների երկրները. ըստ երևույթին, այդ ավերածություններից ազատվելու համար էր, որ հայ, արդեն քրիստոնեու-

[40] Մ. Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 259, 260, 263, 266, 267:

[41] Նույն տեղում, էջ 266, 267:

[42] Փ. Բուզանդացի, էջ 13—17:

[43] Մ. Կաղանկատուացի, էջ 104: Պատմագիրը, օգտվելով իր նախորդներից, նույն դեպքերի նկարագրության մեջ խառն կերպով է գործածում Սանատրուկ և Սանեսան անունները:

թյուն որդեգրած թագավորները հայ եկեղեցու միջոցով մեծ ջանքեր էին թափում կովկասյան այդ ցեղերին գաղափարապես նվաճելու համար։

Թեև Գրիգորիսը նահատակվեց, բայց քրիստոնեությունը հենց Լուսավորչի և Սանեսան-Սանատրուկի հաջորդներից Ուռնայր թագավորի ձեռքով հայտարարվեց պետական կրոն և բռնությամբ ծավալվեց երկրում։ Սակայն ինչպես քրիստոնեությունը, նույնպես և հետագայում Մաշտոցի կողմից ստեղծված գիրը մեծ տարածում չունեին, որովհետև այդ բազմաթիվ ցեղերը, իրենց ուրույն լեզվով, հավատալիքներով և սոցիալական վիճակով բարենպաստ հող չէին ներկայացնում համընդհանուր լեզվի ու գաղափարախոսության համար։ Նշանակալից է, որ քրիստոնեությունը մոտ 150 տարի պետական կրոն հայտարարելուց հետո էլ Մ. Մաշտոցը ստիպված էր, ըստ Մ. Կաղանկատվացու, «եւ նորոգեալ զեկեղեցւոյ հաւատս հաստատէր եւ ձգէր զխառոզութիւն աւետարանին յաշխարհն Ուտիացւոց եւ Աղուանս եւ Լփինս եւ ի Կասպս եւ ի դուռն Ճորայ եւ յայլ ազգի ազգիսն»[44]։ Իսկ Աղվանից կաթողիկոսների կոչումը արտահայտում էր հենց այս բազմապիսությունը՝ կաթողիկոս Աղուանից, Լփնաց և Ճորա երկրների։ Հատկապես դժվար էր համընդհանուր գրական լեզու ստեղծելու հարցը. բազմացեղ և բազմալեզու այդ միջավայրում, ուր կային կովկասյան լեզվախմբին պատկանող տասնյակ լեզուներով ցեղեր, տիրող մազքութները և ուրիշներ պարսկերեն կամ նրա բարբառներով էին խոսում։ Արքունիքը, իր ծագումով հայ Արշակունի լինելով, կարող էր հայերենը գործածել, որի համար մի փաստ էլ այն է, որ Մեսրոպը իր լուսավորչական գործի ընթացքում «միանգամայն և խառնակս կացուցեալ ղրան արքունի՝ ինքն դառնայ ի Հայս»[45], բայց ավագանին, որ մազքութ պիտի լիներ, հարկավ պարսկական էր։ Մեսրոպը Եսվաղեն թագավորի և Երեմիա կաթողիկոսի մոտ գալով, Բենիամինի օժանդակությամբ գիր է ստեղծում աղվանից ցեղերից մեկի՝ գարգարացիների լեզվի առանձնահատկությունների հիման վրա, բայց որքան էլ մեծ լիներ այդ ցեղը, նրա լեզվի հիմքի վրա ստեղծած գրականությունը օտար լեզվի արժեք ուներ այդ միջավայրում. իսկ պաշտոնական՝ հոգևոր և աշխարհիկ հարաբերությունների համար կային հայերենն ու պարսկերենը։ Մատենագրական տվյալների վրա հիմնված մեր այս համառոտ շարադրանքը հաստատվում է նաև տեղագրական և արձանագրական նյութերով, որոնք կշարադրվեն հետո։

Կովկասյան լեռնաշղթայի անցքերի, կապանների և հատկապես Դերբենդի ամրացման և պահպանման հարցը, որի դիմաց տեղավորված էր մազքութ Արշակունի պետությունը իր Չողա մայրաքաղաքով, կենսական էր թե՛ Հայաստանի, թե՛ Պարսկաստանի ու հետագայում նաև Բյուզանդիայի համար, որովհետև լեռնականների ոչ միայն ավերածությունն էր մեծ չարիք, այլև այն, որ նշված պետություններից յուրաքանչյուրը տարբեր ժամանակ լեռնականների ավերիչ արշավանքը քաջալերում և ուղղում էր թշնամական մյուս կողմի վրա։

Երբ Պարսկաստանն ու Բյուզանդիան վերջնականապես բաժանեցին Կովկասն իրենց մեջ և արևելյան Հայաստանն ու Աղվանքը դարձան պարսկա-

[44] Նույն տեղում, էջ 17։
[45] Մ. Խորենացի, էջ 329։

*կան մարզպանություններ, Դերբենդ-Ձողա գլխավոր լեռնանցքներից եկող վտանգի հոգսը բնականաբար ընկավ Սասանյան Պարսկաստանի ուսերին։ Պաշտպանական այս ձեռնարկումները բազմաբնույթ էին. ամենից առաջ մազքութ Արշակունի թագավորությունը, որը դեռ ձևականորեն պահպանվում էր իր Ձողա մայրաքաղաքով, Պերոզի հրամանով տեղափոխվեց արքունական ծախսով շինված նոր մայրաքաղաք, արդեն Կուրի աջ ափին, հայկական Ուտիք նահանգում։ Դա Պարտավ քաղաքն է, որը սկզբում արքայի անունով Պերոզապատ էր կոչվում.* «Եւ հրամանէ Պերոզի, պարսից արքայի շինեցաւ ի Վաչէէ Պերոզապատ մեծ քաղաքն, որ այժմ կոչի Պարտաւ»[46]։ *Այնուհետև լեռնանցքների պահպանության համար պարսկական բանակի կենտրոնը դառնում է Փայտակարան քաղաքը, ուր և նստում է գլխավոր հրամանատարը։ Այս նախապատրաստական աշխատանքներից հետո արդեն Կավատ և խոսրով Անուշիրվան (531—579) թագավորների օրոք ձեռնարկվեցին լեռնանցքները պատնեշներով և պարիսպներով փակելու աշխատանքներ, որոնց առթիվ Կաղանկատվացին պարսից նոր իշխանապետ Գայաշքի գալու առթիվ գրում է.* «Բայց հայէր տեսանել զի՞նչ անցք անցանիցեն ընդ պահապանս մեծ քաղաքին Ձողայ և ընդ դումարտակս սքանչելի պարսպաց նորա, զոր բազում ծախիւք թագաւորացն Պարսից մաշեալ էր զաշխարհս իւրեանց՝ գումարելով ճարտարապետս և հնարելով ազգի նիւթս ի շինուածս մեծասքանչ գործոյն, որով փակեցին աղխեցին ընդ լեառն Կովկաս և ընդ մեծ ծովն արևելից»[47]։ *Դեպքերին համարյա ժամանակակից Սեբեոսը հաղորդում է.* «Այս խոսրով ի ժամանակս իւրոյ թագաւորութեանն կապեաց զպահակն Ճորայ և Աղուանից»[48]։ *Այս հսկայական կառուցվածքները բաղկացած էին իրարից հեռու և զուգահեռ պարիսպներից, պատնեշներից և խրամատներից, որոնցից ամենահզորը հենց Դերբենդինն էր, որն սկսվելով ծովեզրից, տասնյակ կիլոմետր երկարությամբ անցնում էր լեռնագագաթներով՝ փակելով բոլոր անցքերը*[49].

*Հարկավ, այդ պաշտպանական գոտին պահպանելու համար նաև զորք էր պահանջվում, և Պարսկաստանը գտավ մի միջոց, որն իրենից հնարավորին չափ քիչ մարդկային և նյութական միջոցներ էր պահանջում. նախ՝ յուրաքանչյուր ամրության գծի շրջանում ապրող տեղաբնիկ ցեղերի պետերին արքայական տիտղոսներ բաժանելով կարգեց այդ գծի պաշտպան. այդպիսիներն էին՝ Թաբասարան շահ (հայ աղբյուրներում՝ Թավասպարան), Խուրսան շահ (հայերեն Խսրւան, Խուրսան), Վարդան շահ, Լեզկի շահ, Վահրավան շահ, Շարվան շահ, մազքութներ և այլն։ Տեղական այդ ուժերն, իհարկե, անբավարար էին, այդ պատճառով էլ Պարսկաստանի ծովամերձ շրջաններից գաղթեցվեցին ամբողջ ցեղեր և որպես զինված բնակչություն*

---

[46] *Մ. Կաղանկատուացի, էջ 52։*

[47] *Նույն տեղում, էջ 153։*

[48] *«Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», Երևան, 1939, էջ 29։*

[49] *Այդ կառույցների ուսումնասիրմանը նվիրված են բազմաթիվ աշխատություններ, որոնցից նշանավորն են՝* Пахомов, Крупнейшие памятники Сассанидского строительства в Закавказье, «Проблема истории материальной культуры», № 9—10. Л., 1933; М. И. Артамонов, Древний Дербент, «Советская археология», VIII, 1946, М., В. В. Бартольд, К истории Дербента, «Записки Восточного отделения русск. археологического общества», т. XIX, М., 1909.

*հաստատվեցին պաշտպանողական գծերի կարևոր տեղամասերում։ Դրանցից հիշատակված են* բարերի, դնչյամների, լաճինների *և քրդական ցեղեր։ Սրանք, միանալով մազքութների իրանական ժողովուրդներին, դառնում էին երկրամասի բնակչության հիմնական և վստահելի շերտը։ Մինորսկին այդ ռազմական գաղթականների վերաբերյալ շարադրում է արաբ պատմիչ Յակուտի աշխատությունից հետևյալը. լեռնանցքների պահապանները ստանում էին վարձատրություն* «և բաղկացած էին տարբեր երկրներից գաղթեցրած և վստահելի մարդկանցից»[50]: *Այդ վստահելի ռազմիկ գաղթեցվածների մեջ էին, ըստ նույն արաբ պատմիչների, նաև հայկական Սյունիք նահանգի հայերն ու նրանց ռազմիկները։ Բայց նախ մի քանի խոսքով վերհիշենք Սյունիքի նախարարների փոխհարաբերությունները հայ և պարսիկ պետությունների հետ։*

*Սյունիքն, ինչպես հայտնի է, ոչ միայն Հայաստանի մեծ նախարարությունն էր, այլև Արշակունյաց բանակին տալիս էր բոլոր նախարարներից ավելի մեծ թվով մարտիկներ՝ 19400 ըստ Զորանամակի, մի ուժ, որը գերազանցում էր նույնիսկ սահմանապահ բդեշխների մարտիկների թվից, մինչդեռ հայոց պատմության մեջ այնքան նշանավոր դեր խաղացած սպարապետ Մամիկոնյանները տալիս էին միայն 1000 մարտիկ, իսկ թագադիր Բագրատունիները՝ 1500։ Սյունիքի այդ ներքին ուժն էր հենց պատճառներից մեկը, որ նրա իշխանները հաճախ հակադրվում էին Հայաստանի կենտրոնական իշխանությանը, իսկ Պարսկաստանն էլ, իր հերթին, զանազան նենգ միջոցներով քաջալերում էր նրանց այդ կենտրոնախույս ձգտումները, լայնորեն օգտագործելու համար այդ ուժերը հօգուտ իր շահերի։*

*Հատկապես VI դ. քաղաքական իրադարձությունների ժամանակ, երբ Պարսկաստանը ձեռնամուխ էր եղել կովկասյան լեռնանցքները փակելու գործողություններին և կովկասյան ժողովուրդների մեջ էլ մեկը մյուսի հետևից ծավալվում էին ազատագրական շարժումները ընդդեմ Սասանյան Պարսկաստանի, Սյունյաց իշխանները բացարձակ կերպով անցել էին Պարսկաստանի կողմը, և նրանց ուժերն օգտագործվում էին լեռնանցքների պաշտպանության գործի մեջ։*

*Հայ զորքի և հատկապես սյունեցիների համար նորություն չէր կովկասյան լեռնանցքների պաշտպանության գործը. դա նրանց ժառանգական պարտքն էր։ Հիշենք միայն Օրբելյանի հաղորդածը. պատմագիրը, նկարագրելով Վաղարշակի վարչական գործունեությունը, գրում է.* «Եւ հրամայէ Սիսականացն հրամանատար լինել ի վերայ ամենայն արևունի զօրացն.... և ընդդէմ կալ հանապազ պատերազմաւ դրանն Հոնաց, որոյ անուն առաջնոյն Սիսական կոչիւր»[51], *իսկ 480-ական թթ. էլ Պերոզի թագավորության ժամանակ, երբ Զարմիհր զորավարի գլխավորությամբ պարսկական բանակը պայքարում էր Աղվանք ներխուժած լեռնականների դեմ, նրա կազմում էր նաև հայկական գունդը իր նախարար-զորականներով, որոնք պետք է որ սյունեցիներ լինեին։ Իսկ դրանից էլ առաջ Վասակ Սյունի ուրացողը, երբ նշանակվել էր Վրաստանի մարզպան (439—443), ի պաշտոնե պարտավոր էր պաշտպանել կովկասյան լեռնանցքները, և այդ առթիվ նա ծանոթություն ու կապեր էր*

---

50 В. С. Минорский, История Ширвана и Дербенда, *էջ 31։*
51 *Ստ. Օրբելյան, էջ 16։*

հաստատել հոնների ցեղապետների հետ և նույնիսկ դրանով պարծենում ու միաժամանակ սպառնում էր. «Եւ ես մինչ Վրաց մարզպանն էի և դուռն Աղուանից յիմում ձեռին էր՝ բազում զօրագլուխք Հոնաց ընդ իս բարեկամացան ուխտիւ և երդմամբ, և այսօր նոյին երդմամբ երբեւեկեն առ իս». ապա հիշատակելով Հայաստանից հավաքած իր մոտ եղող անթիվ գանձերը, ավելացնում է՝ «յորմէ թէ զմի մասն Հոնաց տամ տանել՝ անտի այնչափ սաստիկ հանեմ Հոնս, որչափ չի հողն Պարսից չբաւիցէ նոցա յաւարի»[52]: Հին էին նաև Սյունյաց իշխանների անջատողական ձգտումները, որոնք անսքող երևան եկան Հայաստանի պետականության վերացման և մարզպանական կարգեր հաստատվելու ժամանակ. Վարդանանց պատերազմի ժամանակ Սյունիքի իշխաններն իրենց բանակներով միացած էին պարսկական զորքերին, իսկ Ավարայրից հետո էլ նրանք հետապնդում էին հայ պարտիզաններին և հասան մինչև Տայքի լեռները ապաստանած հայ մարտիկներին: Իսկ 571 թ., երբ հայ նախարարները պատրաստվում էին նոր ապստամբության, Սյունիքի Վահան իշխանը ոչ միայն անջատվեց ուխտապահ նախարարներից, այլև ըստ պատմագրի, «յայնժամ յառաջ քան զայս ապստամբել ի բաց եկաց ի Հայոց՝ անուանեալ Վահան իշխան աշխարհին Սիւնեաց, և խնդրեաց ի Խոսրովայ յարքայէն Պարսից. զի տարցեն զդիւան աշխարհին Սիւնեաց ի Դունայ ի Փայտակարան քաղաք, և կարգեսցէ զքաղաքն ի Շահրմար Ատրպատականի զի մի եւս կոչեսցի անուն Հայոց ի վերայ նոցա: Եւ կատարէր հրամանն»[53]:

Այժմ Փայտակարան քաղաքը դարձել էր այս ռազմական ձեռնարկումների կենտրոնատեղի, այնտեղ էր նստում Պարսկաստանի հյուսիսային կողմնակալը՝ Ապախտարը, որը գերագույն հրամանատարն էր լեռնանցքները պահպանող զորամասերի: Սյունիքի նախարարները ձգտում էին հենց այստեղը դարձնել նաև իրենց կենտրոնը՝ իրենց դիրքն ու փառքը ավելի բարձրացնելու համար պարսկական արքունիքում:

Սասանյան Պարսկաստանը Սյունիքի նախարարների այդ տրամադրությունները էլ օգտագործեց կովկասյան լեռնանցքների պաշտպանման իր մեծ գործի համար:

Կովկասյան լեռնանցքների դեմ կառուցված ամրությունների նկարագրության ու ձևի, ինչպես և պահապան զորքերի դասավորության ու էթնիկ կազմի մասին շատ արժեքավոր տեղեկություններ են հաղորդում արաբ պատմիչները. դրանցից IX դարի գրող Բալաձորին, ամրությունների կառուցումը վերագրելով պարսիկ արքաներին, ավելացնում է. «Այս տեղերում նա բնակեցրեց ժողովուրդ, որ նա կոչեց Սիսական»[54]:

X դարի սկզբի պատմիչ Իբն-ալ-Ֆակիխը գրում է, որ Դերբենդի պարիսպների երկարությունը 7 փարսախ է, «այդ 7 փարսախ տարածության վրա կան 7 անցքեր, որոնցից յուրաքանչյուրի առաջ շինված է մի մի քաղաք և նրանց մեջ ապրում են պարսիկ զորականներ, որոնք կոչվում են Սիյասիկիաններ», և ավելացնում է՝ «Ասում են, որ Հայաստանի բնակիչ տղամարդիկ պարտավոր են պաշտպանել այդ պարիսպները և դարբասները»[55]:

---

52 «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, 1907, էջ 179:

53 «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Թիֆլիս, 1912, էջ 40:

54 «Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին», հավաքեց և թարգմանեց Բագրատ Խալաթյանց, Վիեննա, 1919, էջ 30—31:

55 Караулов, նշվ. աշխ., вып. XXXI, էջ 23:

Իսկ Յակուտ ալ-Համավին (մեռած 1229 թ.), նույն Անուշիրվանին վերագրելով Շաբրան (Շիրվան) և Մասկատ քաղաքների շինությունը, շարունակում է. «Հետո կառուցեց Բաբ ալ-Աբվաբը (Դերբենդը), որը Աբվաբ կոչվեց, որովհետև շինված էր լեռնային անցքի վրա և այդ վայրերում բնակեցրեց Սայասիջին կոչված ժողովուրդը»[56] (իմա՝ Սիսականք—ծանոթ. թարգմանչի)։

Պարսկա-բյուզանդական հարատև պայքարի ընթացքում, VII դարում, երբ թուլացած Սասանյանները անուշադրության էին մատնել կովկասյան լեռնանցքների պահպանության խնդիրը, խազարները ներս թափանցեցին կովկասյան ամրություններից և, ըստ նույն Բալաձորիի հաղորդման՝ «Շատ սիսականցիներ լքեցին իրենց բերդերն ու քաղաքները, որոնք վերածվեցին ավերակների և խազարներն ու բյուզանդացիները գրավեցին այն, ինչ որ առաջ նրանց (սիսականցիների) ձեռքում էր»[57]։

Իհարկե, սա չափազանցություն է, որովհետև վերաբնակված ռազմիկները ամբողջովին չէին հեռանա իրենց համար արդեն ծննդավայր եղած տեղերից, մանավանդ որ բյուզանդացիները, ըստ իրենց սովորության, կարող էին սիսականցիներին օգտագործել նույն նպատակներով. հետագայում, խալիֆայության քայքայման ընթացքում, այդ միջավայրում գաղթեցված պարսկական ծագումի ցեղերի հիմքի վրա կազմավորվեց Շիրվանի պետությունը և սյունեցի հայերի հիմքի վրա՝ Դերբենդի թագավորությունը։

* * *

Սկզբնաղբյուրների հիման վրա շարադրված այս համառոտ ակնարկից երևում է, որ Կասպից ծովի արևելյան, անդրկովկասյան ափերին և Կովկասի հարավային լանջերին այս ժամանակաշրջանում՝ IV—XII դդ. ապրել են հիմնականում 3 խումբ ժողովուրդներ. ա) բնիկ բազմաթիվ մանր ցեղեր, իրենց ուրույն լեզուներով, որոնք բոլորն էլ պատկանում են կովկասյան լեզվաընտանիքին, բ) մազքութներ՝ իրանյան ցեղեր, որոնք ավելի շատացան Սասանյանների կողմից հիմնված ռազմական գաղութների շնորհիվ և գ) սյունեցի հայեր, որոնց նույն նպատակներով այստեղ բնակեցրին Սասանյանները։

Արդ, ի՞նչ եղան և ի՞նչ մնաց այդ ժողովուրդներից։

Դրանցից բնիկ, հիմնական ցեղերը, որոնք պատմության մեջ աղվաններ ընդհանուր անունով են կոչվել, դեռևս արաբական տիրապետության ժամանակ մեծ մասամբ թեև իսլամացվեցին, բայց զարմանալի տոկունությամբ պահպանեցին իրենց ցեղային առանձնահատկությունները, հատկապես լեզուն։ Դրանցից մի քանիսը գոյատևեցին մինչև օրս էլ, ոմանք մեծաթիվ, մյուսներն էլ չնչին բեկորներով։ Մեզ հետաքրքրող միջավայրում՝ այն է Սամուր գետի ավազանում, մինչև Դերբենդ քաղաքի շրջապատը, այժմ էլ իրենց ուրույն լեզուներով, որոնք պատկանում են կովկասյան լեզվաընտանիքին, մնում են հետևյալ ցեղերը. լեզգիներ՝ 134 հազար, ապրում են Ադըր-

56 Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները..., էջ 17։

57 Баладзори, Книга завоевания стран, перевод текста П. К. Жузе, Баку, 1927, էջ 7։

րբեջանի և Դաղստանի հանրապետությունների սահմանի երկու կողմերում, թաբասարանցիներ՝ 35 հազար, ապրում են Դերբենդի շրջակայքում, ավարներ՝ մոտ 240 հազար, ապրում են երկու հանրապետություններում, մեծ մասամբ Դաղստանում, ախվալներ՝ 5 հազար, նույնպես երկու հանրապետություններում, ռուտուլներ (կամ մուխատներ)՝ 7100, նույնպես երկու հանրապետություններում, ցախուրներ՝ 15000, ապրում են նույն տեղերում, կրիզներ՝ 6 հազար, և բուդուխներ՝ 1000 մարդ, նույնպես ապրում են երկու հանրապետություններում, խինալուգներ՝ ընդամենը 1000 մարդ, խապուտներ և ուրիշներ։

Սասանյանների գաղթեցրած իրանական ցեղերից, ինչպես տեսանք, գրականության մեջ պահպանվել են չորս անուններ՝ թաթեր, դեյլամներ, լահիճներ և frդեr. դրանք խոսելիս են եղել իրանական լեզվի արևմտյան ճյուղի բարբառներով. Նոր միջավայրում նրանք, խառնվելով իրար, իրենց երբեմնի ցեղական անունները թողել են իրենց բնակավայրերի վրա, իսկ լեզվի մեջ գերակշռել է թաթերի լեզուն, հավանաբար թվական գերազանցության պատճառով։ Այժմ այդ լեզվով խոսողների թիվը Ադրբեջանում և Դաղստանում հաշվում են մոտավորապես 29—30 հազար մարդ։ Թաթերի բուն հայրենիքը իրանական Ադրբեջանն է, ուր այժմ էլ ապրում են նրանց նախորդները Բոյու-թաթ անունով։ Նոր միջավայրում թաթերը թվով և դիրքով ավելի նշանակալից դեր են խաղացել և նրանց լեզուն դարձել է ընդհանուր հարաբերությունների լեզու, դրա հետևանքով էլ Ադրբեջանի հյուսիսում և Դաղստանում ապրող հրեաների համար այն դարձել է մայրենի լեզու։ Թաթերի հետ հարևանորեն ապրող հայ գյուղերի բնակիչները ևս, իրենց մեկուսացած կյանքի շնորհիվ մոռանալով հայերենը, թաթերենն են դարձրել մայրենի լեզու, բայց պահել են կրոնը և իրենց հայ անունը։ Երբ Սասանյանների օրոք թաթերը տեղափոխվեցին, նրանք իրենց հետ բերին նաև զրադաշտական կրոնը։ Դեռևս XIII դ. արաբ պատմիչ Յակուտ ալ-Համավին Ադրբեջան անունը ծագած է համարում կրակե տուն գաղափարից՝ «որովհետև այդ կողմերում շատ կրակատներ կան»[58]։ Այդ կրոնի ատրուշանների ավերակները մինչև օրս մնում են Բաքվից բացի Ղուբայի շրջանի Խինալըղ և Մալականի գյուղերի մոտ, Շամախու շրջանում՝ Սալյանի մոտ, Նուխիի շրջանի Հոնենճ և Կախավան գյուղերի, Շաքի քաղաքի մոտ և այլուր[59]։

Սասանյանների հիմնած ռազմա-պաշտպանական քաղաքների սյունեցի հայ բնակչությունն, ինչպես տեսանք, VIII դ. վերջերից, արաբական խալիֆայության քայքայման ընթացքում, կարողացավ ինքնուրույն պետություն կազմակերպել Դերբենդի շրջակայքում, որ գոյատևեց մինչև XIII դարի սկիզբը։ Այդ թագավորության հիմքը կազմեց սյունեցի զինվորական հայ գաղթականությունը, բայց նրա տեղական դաշնակիցներն էին նաև բնիկ աղվան ցեղերը, որոնցից ոմանք քրիստոնեություն էին ընդունել գրեթե Հայաստանի հետ միաժամանակ, և արդեն աղվանից կաթողիկոսների նստավայրն էլ սկզբում Ջողա-Դերբենդումն էր ։ Նրանց տիտղոսն էր «կաթողիկոս Աղվանից, Լփնաց և Ջողա»։ Հենց այս հանգամանքն էլ արտահայտվել է Ուռհայեցու մոտ, որը Դերբենդի թագավորությանը մեկ հայ է անվանում և

58 Հ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները..., էջ 10։
59 Մ. Բարխուդարյանց, Աղվանից երկիր, էջ 80—81։

ուրիշ անգամ էլ՝ Աղվանից։ Սակայն Դերբենդի թագավորության ինչպես վերնախավի, այնպես էլ ժողովրդի մեջ վառ է եղել իրենց սյունեցի լինելու հիշողությունը. այդ են վկայում մեր մեջ բերած այն փաստերը, որ վերաբերում էին երկու երկրների արքայական տների սերտ կապերին և հալածական Աղվանից կաթողիկոսի ապաստարան գտնելուն Սյունիքում, ինչպես նաև Ս. Օրբելյանի հաղորդումը, որ Սյունիքի Վահանավանքում են թաղվել Աղվանքի շատ թագավորներ և իշխաններ։

Հետագայում սելջուկ-թուրքական հորդաների ներխուժումը ամեն ինչ հողին հավասարեցրեց, բայց մինչև XVIII դարի վերջն էլ Սամուր գետի հովտում, մինչև Դերբենդի շրջակայքը, հայերն ապրում էին հոծ բազմությամբ, թեև որոշ գյուղերում արդեն թաթախոս։

Դեռևս XV դ. հայկական կյանքն այնքան աշխույժ էր այս վայրերում, որ պահպանվում էին մշակութային օջախներ, ուր և ձեռագրեր էին գրվում. այսպես՝ 1403 թ. թաթախոս Մադրասա գյուղում «ընդ հովանեաւ... սուրբ Աստուածածնիս» Թումայ Թավրիզեցի գրիչը արտագրել է «Մեկնութիւն և քարոզ Մատթէոսի վարդապետի, աշակերտի Գրիգորի Տաթեւացւոյ»[60], իսկ 1471 թ. «ի յերկիրս Շարվանայ, ի գեղս Սոկութլու» Հակոբ գրիչը արտագրել է մի ամբողջ ժողովածու[61]։

Այս հայ բնակչության մեծ մասը 1796 թ. ռուս բանակի հետ, որին գլխավորում էր գեներալ Պլատոն Զուբովը, թողեց իր բազմադարյան բնակավայրերը և քոչեց արդեն ապահով ռուսական հող դարձած հյուսիսային Կովկաս ու տեղավորվեց Ղզլարի և Մոզդոկի շրջաններում։ Այդ գաղթողներն արդեն թաթախոս էին. իրենց նոր միջավայրում միայն XIX դ. աստիճանաբար կրկին հայերենին անցան շնորհիվ դպրոցական և լուսավորական այլ հիմնարկների հաստատման։ Տեղում մնացածները ևս մինչև XIX դ. թաթախոս էին, որից հետո նույնպես աստիճանաբար հայերենին անցան. հիշատակենք դրանցից երեք մեծ գյուղերի բնակիչներին, այն է՝ Քիլվար, Խաշմազ և Մաղրասա, որտեղ ծերունիները թաթախոս են դեռ։

Նրանք փաստորեն եռալեզու են, հավասարապես ազատ տիրապետում են հայերենին, թաթերենին և ադրբեջաներենին։ Հյուսիսային Կովկաս գաղթեցածներից Դերբենդի հայերը տեղավորվեցին Մոզդոկից մոտ 100 կիլոմետր հեռու գտնվող Մեծ և Փոքր Մաճառ գյուղերում, Մաճառ կամ սբ. Խաչ քաղաքում, որը Մոզդոկից հեռու է ինը կիլոմետր, ունի 600 տուն, զուտ հայաբնակ է, ունի երկու եկեղեցի, թաթախոս են։ Խաշմազի մոտ Մոլլա Խալիլ գյուղի բնակիչները տեղավորվեցին Ղզլարի մոտ և իրենց նոր գյուղը կոչեցին հնի անունով։ Այստեղից գաղթածներից են նաև Ղզլարի մոտի Սարաֆան գյուղի բնակիչները և Կոսայամ-Ղորա կամ Նոր Եդեսիա զուտ հայաբնակ գյուղի 300 տուն բնակիչները, որոնք խոսում են թաթերեն։

Գաղթական այս հայերի մեջ դեռ վառ է պահպանված իրենց նախկին հայրենիքի հիշատակը, և ամեն տարի նրանք հոծ բազմություններով ուխտի են գալիս Մեյսարի գյուղի մոտի վանքը[62]։ Հայերի մեծ մասի գաղթելուց

---

[60] «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն Ա, կազմեց Լ. Խաչիկյան, Երևան, 1955, էջ 31—32։

[61] Նույն տեղում, մասն Բ, էջ 319—320։

[62] Այս տեղեկությունները առնված են Ջալալյանցի Ճանապարհորդութիւն, հատ. Բ և Ամրատյանցի Նկարագիր ս. Ստեփանոսի վանուց Սաղիանի գրքերից։

*հետո տեղում մնացին նրանց փոքրաթիվ մնացորդները, որոնք և աստիճանաբար լուծվեցին տեղացի մահմեդականների մեջ։ Բացի նրանց թողած նյութական հիշատակներից, որոնց մասին առանձին խոսք կլինի, շատ տեղերի բնակիչներ հիշում են, որ իրենց նախորդները հայ են եղել և շատ ընտանիքներ կան, որոնց հայկական ազգանվան վրա միայն մուսուլման* օղլի *կամ* ուշաղ *մասնիկներն են ավելացվել. օրինակ, Թալաբի գյուղի 110-ամյա մի ծերունի պատմել է.* «Գյուղումս 500 հայոց տուն կար և 5 քահանա: Խեղճ հայերը, ձանձրանալով լեզգիների հաճախակի ավարառություններից և նեղություններից, մոտ 100 տարի առաջ փակեցին եկեղեցու դռները, մեծ, փոքր լալով համբուրեցին նորա սեմերը և գնացին Ռուսիա, բայց ութը գերդաստան ետ բերին աղաչելով և թախանձելով: *Գյուղում կային Օհան օղլի, Բաղդասար ուշաղի, Արթին ուշաղի և նման ազգանուն ունեցող գերդաստաններ»*[63]*։*

*Ավելի պերճախոս են այս միջավայրում պահպանված հայ բնակչության թողած նյութական մշակույթի մնացորդները, որոնց մասին խոսում են XIX դարում այդ վայրերում ճամփորդած մեր երախտաշատ տեղագիր հեղինակները։ Ահա համառոտակի այդ տեղեկությունները։*

Դերբենդ քաղաք—*ապրում էին 150 տուն հայեր, ունեին Ամենափրկիչ անունով եկեղեցի, որը հին հիմքերի վրա շինվել է 1869 թ., ունեցել են ծխական դպրոց։ Տեղի բնակիչներից Մելիք Շահնազարյանցի մոտ Մ. Բարխուդարյանցը կարդացել է կարնեցի Ղուկաս կաթողիկոսի կոնդակը, թվագրված 1782 թ., որով կաթողիկոսը հայտնում է, որ ուղարկում է Դերբենդ իր նվիրակին, «Յակովբ հանճարաշատ վարդապետին», աթոռապատկան գործերը կարգադրելու համար։ Դերբենդի հնագույն եկեղեցին վեր է ածվել մզկիթի XVII—XVIII դդ., իսկ կաթողիկոսական կամ արքունական պալատները օգտագործվել են այլ նպատակներով*[64]*։*

Ձողա մայրաքաղաք—*գտնվում է Դերբենդից հարավ ծովը թափվող Սամուր գետի ճյուղավորումների արանքում։ Մազքութ Արշակունիների այս նստավայրի ավերակների վրա տեղավորված են երկու գյուղեր՝ Մոլլախալիլ՝ ադրբեջանական փոքր, և ավելի մեծ՝ հրեական գյուղ. երկու գյուղերի արանքի ամբողջ 3 կիլոմետր տարածությունը ծածկված է ավերակներով. իր քարոզչության ժամանակ այստեղ նահատակված Եղիշե առաքյալի գերեզմանի վրա եղած մատուռը վերաշինվել է ըստ արձանագրության 1879 թ., այստեղ ուխտի են գալիս հայերից բացի նաև լեզգիները։*

*Մայրաքաղաքի հին գերեզմանատունը գտնվում է հրեական ավանի և Ղուլլար կայարանի սահմաններում. վայրը կոչվում է Պողոս-բուլաղ (Պողոսի աղբյուր), այն աղբյուրի անունով, որը գտնվում է այստեղ, մեծ ծառերի հովանու տակ. գերեզմանաքարերն ամբողջովին ծածկված են փշոտ մացառներով և անմատչելի են։ Մ. Բարխուդարյանցը կարողացել է վերծանել 27 տապանագրեր, որոնք վերաբերում են հայոց Ի—ՌԾԼ=20—1721 թվականներին. չանդրադառնալով հայերեն մեկ տառով նշանակված թվականներին,*

---

63 *Մ. Բարխուդարյանց, Աղվանից երկիր, էջ 138։*

64 *Մ. Կաղանկատվացու շարունակողն այդ առթիվ գրում է. «Եւ ի հարիւր ութսուն թուականին Հայոց դարձեալ Մսլման շինէ զԴարբանդն յանուն տաճկաց, այլ զկաթողիկոսարանն Աղուանից ոչ աւերէ, որ դեռևս կա ի նմա», էջ 368։*

*որոնք ստուգման կարոտ են, մնացածները վերաբերում են 751, 801, 851, 951, 1051, 1152, 1261, 1321-ից մինչև 1721 թվականներին*[65]։

Խաչմազ գյուղ—*այժմ շրջկենտրոն, նաև երկաթուղային կայարան. XIX գ. վերջին ունեցել է 32 տուն հայեր, եկեղեցի և դպրոց. երկու հին գերեզմանատները գտնվում են գյուղի հարավային կողմում և ծածկված են փշոտ մացառներով. դժվարությամբ վերծանվել են մեկ տասնյակի չափ տապանագրեր, որոնք վերաբերում են VI—XIX դդ.։ Այստեղ էր գտնվում Սենեքերիմ թագավորի գերեզմանաքարը, ուր տեղացիները ամեն տարի մեռելոցի օրերին ուխտի էին գալիս։ Մեծ գերեզմանատան արևմտյան կողմում կա մի բարձրավանդակ՝ հարթ տեղ, կես կիլոմետր տարածությամբ, շրջափակված գետով և արհեստական խրամներով, որտեղ տեղական ավանդությամբ եղել է Դերբենդի Սենեքերիմ և Գրիգոր թագավորների ձմեռանոց պալատը. նկատելի են բազմաթիվ շենքերի հիմնապատեր և թրծած աղյուսի բեկորներ. այս վայրը նույնպես ուխտատեղի է համարվում տեղացի հայերի համար*[66]*։ Մյուս տեղագիրը այսպես է նկարագրում.* «Գերեզմանատունք այսր զեղջ զարդարեալ կան գեղեցիկ մահարձանօք, բայց այժմ գլխովին մացառապատ, ի միջի որոց է գերեզման Սենեքերիմ արքայի, որդւոյ Սևադայի ի վերա որոց գրի—Այս է տապան Սենեքերիմ արքայի»[67]:

*Վերջին դարերում այստեղ էին նստում Բալա-ղաղարի սերնդի հայ մելիքները, որոնց վերջին շառավիղը՝ Հովսեփ բեկը, թաղված է եկեղեցու հյուսիս-արևելյան խորանում, մարմարե տապանաքարի վրա գրված է ընդարձակ արձանագրություն 1862 թ.։*

*Այստեղ հայկական եկեղեցիների ավերակներ և գերեզմանատներ կան* Պարախում, Վելիմուր, Բոստանչի *և* Ղասումքենդ, *նաև* Խաշնի *գյուղերի մոտ, որոնց տապանագրերը թվագրված են 580—1796 թթ.*[68]։

Ղուբա քաղաք—*հայկական թաղը բաղկացած է եղել 200 ընտանիքից. ունեցել են դպրոց և եկեղեցի վերաշինված 1850-ական թթ.*[69]։

Սպիք գյուղ—*լեզգիաբնակ այս գյուղը գտնվում է Ղուբա քաղաքի մոտ, գյուղի մեջ մնում են եկեղեցու հիմնապատերը ու գերեզմանատունը. տեղացիների ասելով հայերը Ջուբովի ժամանակ ուրիշ գյուղերի ժողովրդի հետ գաղթել են Ղզլարի կողմերը*[70]։

Թալաբի ներքին—*գտնվում է Ղուբայից արևմուտք. այստեղ կա հայկական հին գերեզմանատուն, տապանաքարերի մեծ մասը ծածկված է հողով։ Մ. Բարխուդարյանցը բացել է դրանցից 3-ը, որոնց վրայի տապանաքարերն ունեցել են 1058, 1241 և 1529 թվականներ*[71]։

Թալաբի վերին—*այստեղ մնում են եկեղեցու ավերակները և մեծ գերեզմանատուն, ուր շատ քարերի վրա կան քահանաների նշաններ՝ գավազան. տեղացիների պատմելով գյուղը ունեցել է 500 տուն բնակիչ, որոնք գաղթել են Ռուսաստան, Ղզլարի շրջան, բացի 8 տնից, որոնք մահմեդակա-*

---

65 *Մ. Բարխուդարյանց, Աղվանից երկիր, էջ 105—110։*

66 *Նույն տեղում, էջ 135—136։*

67 *Ս. Ջալալյանց, Ճանապարհորդութիւն, հատ. Բ, էջ 420։*

68 *Նույն տեղում, էջ 135։*

69 *Նույն տեղում, էջ 127—130։*

70 *Նույն տեղում, էջ 126։*

71 *Նույն տեղում, էջ 126, 137։*

*նություն ընդունելով մնացին տեղում, և այժմ երկու Թալարինների բնակիչները դրանց սերունդներն են, այդ պատճառով էլ կրում են Օհան օղլի, Արթին ուշաղի, Բաղդասար ուշաղի մականունները*[72]։

Քիլվար—*Ղուբայի շրջանում միակ հայախոս գյուղն է սա այժմ. գյուղի եկեղեցու հիմքերը շատ հին են, դրանց վրա վերջին դարերում երեք անգամ հիմնական նորոգումներ են կատարվել. առաջինը ըստ արձանագրության ՌԼԴ—1585 թ., երկրորդը՝ 1637 թ., որի առթիվ գրված արձանագրությունը հետևյալն է.*

«Շինեցաւ սուրբ եկեղեցիս ի ժամանակն և ի հայրապետութեան Թոմայ վարդապետի, թվին ՌԺԶ-ին. ձեռամբ ուստայ Կիրակոսին»[73]: *Եվ վերջին անգամ՝ 1877 թ. թրծված աղյուսով ու գմբեթավոր, որ կանգուն է մինչև այժմ։*

*Քիլվար գյուղի շուրջը գտնվում են Ջեյվա, Խաշնի, Ուլվար, Դիխան ավերակ և Ղասումքենդ գյուղերը, որոնց մեջ կան հայկական եկեղեցիների ավերակներ և գերեզմանատներ։*

Փիլիպլու—*ինչպես տեսանք, Դերբենդի թագավորներից Փիլիպոսի մասին ավելի շատ տեղեկություններ էին պահպանված մատենագրության մեջ. ըստ երևույթին, նա ոչ միայն կարևոր դեր է խաղացել քաղաքական կյանքում, այլև իր երկրի ներսում շինարարական մեծ աշխատանքներ է կատարել. այդ են վկայում նրա անունով մնացած հետևյալ վայրերը. Ա)* Փիլիպլու-բերդ. *գտնվում է Արչկան գետակի և* Էրմանիդ *գյուղի արանքում, բարձր բլրի վրա, քարկիր պարիսպը և 9 բուրգեր դեռ կանգուն են. ներսում կա ջրամբար*[74]: *Բ)* Փիլիպլու գյուղ, *այժմ լեզգիաբնակ, որի մոտ նույնպես բերդ կա։ Այս բերդերի մոտակայքում մնում են քաղաքի կամ ավանի ավերակներ*[75]։

*Տեղագրական այս փաստերը, հարկավ, լրիվ լինել չեն կարող. այդ են ցույց տալիս մանավանդ Դաղստանի հանրապետության գիտական հիմնարկների ջանքերով ստեղծված «Դաղստանի պատմություն» աշխատության առաջին հատորում եղած հետևյալ տողերը, որոնք անշուշտ երկրի հարավային շրջաններին են վերաբերում. «Դաղստանում հայտնի են զգալի թվով նախաֆեոդալական շրջանի բնակավայրեր, որոնք կոչվում են* Հայկական գյուղ. Հայկական ճաղաճ, Հայկական բերդ, *նաև* Հայկական ճանապարհ, Հայկական պարտեզ (огород—*թերևս գործ է ածված պատնեշ-պարիսպ իմաստով—Ս. Բ.)*»[76]։

*Այնտեղ հիշատակված է նաև, որ Բոլիջիի շրջանում մնում է հայկական մեծ գերեզմանատուն։*

---

[72] *Նույն տեղում, էջ 137—138։*

[73] *Նույն տեղում, էջ 424։ 1964 թ. մեր այցելած ժամանակ այս արձանագրության երկու կտոր քարերը տեսանք պատերի ստորին մասերի շարվածքի մեջ։ Իսկ գյուղում գործող հայկական դպրոցը փոխարինվել է նախ ռուսականով և այժմ էլ ադրբեջանականով։*

[74] *Մ. Բարխուդարյանց, Աղվանից երկիր, էջ 257։*

[75] *Նույն տեղում, էջ 258։*

[76] «История Дагестана», т. I, М., 1967, *էջ 165։*

# ДЕРБЕНТСКОЕ АРМЯНО-АЛБАНСКОЕ ЦАРСТВО

С. Г. БАРХУДАРЯН

**(Резюме)**

В начале V в. Сасанидский Иран переселил на территорию оборонительной линии Дербентского прохода ряд иранских племен из Атрпатакана, а также множество армян из Сюника. Военные лагеря сюникских армян располагались у семи главных входов Дербента, которые являлись самыми ответственными пунктами обороны. Эти лагеря представляли собой поселки городского типа.

В IX в., в конце арабского владычества, заменившего иранское, вследствие ослабления и разложения Арабского халифата один за другим восстали и приобрели независимость ряд подвластных народов и даже некоторые из эмиров. Армяне, заселившие территорию оборонительной линии Дербента, совместно с албанцами, лезгинами, табасаранцами и другими местными племенами создали армяно-албанское государство, деяния и имена царей которого начиная с VIII в. упоминаются в армянской историографии. Территория этого царства в основном локализуется в районе реки Самур. Главными его городами являлись Чора и Дербент. Иранские же племена, переселенные на территорию Ширвана (маскаты, таты и др.), создали здесь Ширванское царство.

На территории обоих этих царств, вследствие политической ситуации, доминирующим стал татский диалект иранского языка.

Территория Дербентского царства была расположена по обеим сторонам границы Азербайджанской и Дагестанской республик, где и по сей день в древних селениях сохранились церкви и могильники с армянскими надписями.

Армянское население Дербента в 1796 г. вместе с русским войском выселилось из этой вековой среды и обосновалось в разных районах Северного Кавказа (Моздок, Мачар, Сарафан, Касаям, Гора и др.) и только в этих местах постепенно вернулось к родному языку. Оставшееся население в Килваре, Хачмасе, Мадрасах и других селах и поныне остается татоязычным.